Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 4 ՓԵՏՐՎԱՐ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


էջ

Նյութեր զրույցների համար

Գ. ԳՈԼՈՒԲԵՎ — Երկու մեծ ժողովուրդների անխախտ բարեկամությունը . . . . . . 1

ՅՈՒ. ՂՈՒԿԱՍՅԱՆ — Զրույց կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկի մասին . . . . . . . . . . . . . . . 14

Ագիտացիոն աշխատանքի փորձից

Ռ. ՊԵՏՐՈՍՅԱՆ — Ագիտպունկտը ընտրությունների օրերին . . . . . . . . . . . . 22

Օգտագործիր զրույցի ժամանակ

Էկոնոմիկայի անկումը կապիտալիստական երկրներում (թվեր և փաստեր) . . . . . 29

Պատասխան ընթերցողների հարցերին

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ — Չինաստանի նկատմամբ ԱՄՆ-ի ագրեսիվ գործողությունների մասին 35

Տեղեկատու բաժին . . . . . . . . . . . . . 44

Նոր գրքեր . . . . . . . . . . . . . 49


---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։


---



# ԵՐԿՈՒ ՄԵԾ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

### Գ. ԳՈԼՈՒԲԵՎ

1950 թվականի փետրվարի 14-ին Մոսկվայում ստորագրվեց Բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության պայմանագիր Սովետական Միության ու Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի միջև։ Սովետական և չինական ժողովուրդները, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները, ինչպես նաև ամբողջ պրոգրեսիվ մարդկությունն արդարացիորեն գնահատեցին այս պատմական փաստաթուղթը, որպես նոր դարագլուխ Սովետական Միության և Չինաստանի ժողովուրդների միջև բարեկամության զարգացման ու ամրապնդման գործում, որպես խոշորագույն ավանդ սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության ուժերի ամրապնդման գործում։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կազմվելն աչքի ընկնող իրադարձություն հանդիսացավ համաշխարհային պատմության մեջ։ Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակն Ասիայի մեծագույն երկրում





նոր ճեղք բացեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի մեջ։ Առաջին անգամ իր բազմադարյան պատմության մեջ, ընդմիշտ ոչնչացնելով իմպերիալիստական և ֆեոդալական ուժերի տիրապետությունը, Չինաստանի աշխատավորներն ստեղծեցին կենտրոնացված, անկախ, բազմազգ պետություն։ Հաստատելով ժողովրդական դեմոկրատիայի դիկտատուրայի կարգ, որի հիմքն է հանդիսանում բանվոր դասակարգի և գյուղացիության անխորտակելի դաշինքը, չինական ժողովուրդը դարձավ իր բախտի լիիշխան տերը։ Նրանց առջև բացվեցին սոցիալիստական հասարակարգի շինարարության լայն և լուսավոր հեռանկարներ։

Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակով չին մեծ ժողովուրդը մտավ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի միասնական, հզոր լագերի մեջ։ Ավելի քան 900 միլիոն մարդ միավորող այս լագերը հանդիսանում է ամբողջ աշխարհի ժողովուրդների խաղաղության և անվտանգության կայուն երաշխիքը։ Ի դեմս Սովետական Միության ժողովուրդների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորների, չինական ժողովուրդը ձեռք է բերել հավատարիմ բարեկամներ և դաշնակիցներ, որոնց միջև ան-



դադար աճում և զարգանում է համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը։

Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի միջև բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության պայմանագրի կնքումից հետո անցած 5 տարիները համոզիչ կերպով ցույց տվեցին, որ սովետա-չինական բարեկամությունը հանդիսանում է հզոր գործոն երկու մեծ ժողովուրդների կյանքում։ 1950 թվականի փետրվարի 14-ին կնքված Պայմանագիրը դարձավ իրավահավասարության սկզբունքների վրա հիմնված քաղաքական, տնտեսական և կուլտուրական բազմակողմանի համագործակցության անսասան հիմքը։

«Չին-սովետական նոր պայմանագիրն ու համաձայնագրերը,— ասել է Մաո Ցզե-դունը,— իրավաբանորեն ամրացրին բարեկամությունը Չինաստանի և Սովետական Միության մեծ ժողովուրդների միջև, մեզ տվեցին հուսալի դաշնակից։ Դրանք թեթևացրին մեր աշխատանքը ներքին շինարարության բնագավառում և համատեղ դիմադրությունն իմպերիալիստական հնարավոր ագրեսիայի դեպքում՝ հանուն խաղաղության պաշտպանության ամբողջ աշխարհում»։

Հենվելով Սովետական Միության, ժող-

վորդական դեմոկրատիայի երկրների հետ ունեցած անխախտ բարեկամության վրա, Չինաստանի աշխատավորները տարեցտարի հասնում են նորանոր հաջողությունների արդյունաբերության, գյուղատնտեսության և ազգային կուլտուրայի զարգացման մեջ։ Չինական ժողովրդի կողմից նվաճված աննախընթաց դեմոկրատական իրավունքներն օրենսդրական կարգով վավերացվեցին 1954 թվականին ընդունված Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կոնստիտուցիայի մեջ։ Անչափ աճեց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հեղինակությունը միջազգային արենայում։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ չին ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում վերականգնեց իմպերիալիստների ու գոմինդանական ռեակցիոներների կողմից ավերված ժողովրդական տնտեսությունը և վստահորեն ընթանում է սոցիալիստական շինարարության ուղիով։ Վերականգնման շրջանում ձեռք բերված հաջողությունները չին ժողովրդին հնարավորություն տվեցին 1953 թվականից անցնելու իր առաջին հնգամյա պլանի իրագործմանը, որի հիմնական խնդիրն է՝ զարկ տալ ծանր արդյունաբերության զարգացմանը, երկրի ինդուստրացման հիմքը դնել։



Արդյունաբերական արտադրանքի ծավալը 5 տարվա (1953—1957 թ. թ.) ընթացքում 1952 թվականի համեմատությամբ կմեծանա ավելի քան 2 անգամ։ Արագ տեմպերով է աճում չուգունի և պողպատի թողարկումը։ Երկրի կենտրոնում, չինական մեծ գետի՝ Յանցզինի ափերին, Խոանշի քաղաքում և Հյուսիսում, Բաոտոու քաղաքում մետալուրգիական նոր բազաներ են ստեղծվում։ Հյուսիս-Արևելյան Չինաստանում կատարվում է ավտո-գործարանի շինարարություն։ Չինաստանի մեքենաշինական արդյունաբերությունը, որը գոմինդանական ռեժիմի ժամանակ ըստ էության չկար, այժմ բաց է թողնում 1900 տիպի դազգահներ և մեքենաներ։

Հաջողությամբ զարգանում է Չինաստանի ածխային արդյունաբերությունը։ Երկրի ածխային հիմնական կենտրոնում՝ Ֆուշունում վերջին հինգ տարիների ընթացքում ածխի հանույթն ավելացել է 4 անգամ։

Ավելի ու ավելի է աճում պետական և կոոպերատիվ արդյունաբերության տեսակարար կշիռը։ Ընթացիկ տարում, օրինակ, պետական և կոոպերատիվ արդյունաբերության արտադրանքը կազմելու է ամբողջ արտադրության համախառն արտադրանքի 71 տոկոսը, 1949 թվականի 37 տոկոսի դիմաց։

Երկրի ինդուստրացման գործում Չինաստանին անգնահատելի օգնություն է ցույց տալիս Սովետական Միությունը։ 1950 թվականի փետրվարի 14-ին կնքված Պայմանագրին համապատասխան Սովետական կառավարությունը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային տրամադրեց 300 միլիոն ամերիկյան դոլարի երկարաժամկետ տնտեսական վարկ։ 1954 թվականի հոկտեմբերին ՍՍՌՄ-ը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային տրամադրեց 520 միլիոն ռուբլու նոր երկարաժամկետ վարկ։

Սովետական կառավարությունը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունը համաձայնության են եկել նաև Լանչժոու-Ուրումչի—Ալմա-Աթա երկաթգծի համատեղ շինարարության կապակցությամբ։ Մինչև 1959 թվականի վերջը Սովետական Միությունը կմասնակցի 156 խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների շինարարությանը և վերակառուցմանը Չինաստանում։

Սովետական Միությունը Չինաստանից ստանում է բազմազան արդյունաբերական և գյուղատնտեսական ապրանքներ։ Չինաստանը Սովետական Միություն է ուղարկում գունավոր մետաղներ, բուսական յուղեր,



թեյ, ծխախոտ, բուրդ, ջութ, մետաքսյա կտորներ և շատ ուրիշ ապրանքներ։

Մեծ վերելք է ապրում չինական գյուղը, որտեղ դեռ վերջերս ֆեոդալ-կալվածատերերն իշխում էին ոչ միայն հողի, այլ նաև երկրի բնակչության 80 տոկոսը կազմող միլիոնավոր ճնշված գյուղացիների բախտի վրա։ Չինաստանում անցկացվեց ագրարային ռեֆորմ, որի հետևանքով ավելի քան 300 միլիոն սակավահող և հողազուրկ գյուղացիներ անվճար ստացան մոտ 47 միլիոն հեկտար հող։

Իշխանության կենտրոնական և տեղական օրգանները զգալի միջոցներ են բաց թողնում գյուղատնտեսության զարգացման համար, այդ թվում ոռոգիչ և մելիորատիվ կառուցումների շինարարության համար, գյուղացիներին մատակարարում են պարարտանյութեր, գյուղատնտեսական գործիքներ և մեքենաներ։

Կոմունիստական պարտիայի կոչով Չինաստանի աշխատավոր գյուղացիությունը կանգնում է կոլեկտիվ աշխատանքի ուղու վրա։ Երկրում կամավոր սկզբունքներով կազմակերպված են 200 հազարից ավելի գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներ։ Ներկայումս բոլոր գյուղացիա-

կան ծխերի 60 տոկոսը համախմբված է փոխադարձ օգնության խմբերում և գյուղատնտեսական կոոպերատիվներում։ Գյուղացիները փորձով համոզվում են, որ կոլեկտիվ աշխատանքի առկայությամբ ավելանում է բերքը, աճում է իրենց նյութական բարեկեցությունը։ Գյուղական բնակչության գնողունակությունը, 1950 թվականի համեմատությամբ, 1953 թվականին աճել է 76 տոկոսով։

Կոմունիստական պարտիայի և ժողովրդական կառավարության կողմից անցկացված միջոցառումների շնորհիվ տարեցտարի աճում է գյուղատնտեսական արտադրության արտադրանքը։ 1953 թվականին հացահատիկի համախառն արտադրանքը, 1952 թվականի համեմատությամբ, աճել է երկու միլիոն տոննայով։ 1954 թվականին, չնայած անբարենպաստ պայմաններին, հավաքված է ավելի շատ հացահատիկ, բամբակ և այլ կուլտուրաներ, քան 1953 թվականին։

Սովետական Միության օրինակով Չինաստանում ստեղծված են պետական հողագործական տնտեսություններ և մեքենա-տրակտորային կայաններ, որոնք օգնում են գյուղացիությանը գյուղատնտեսությունը զարգացնելու և այն առաջավոր գիտության ու



կատարելագործված գյուղատնտեսական տեխնիկայի հիման վրա վարելու գործում։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կազմակերպման 5-րդ տարեդարձի տոնակատարության օրերին Սովետական կառավարությունը չինական ժողովրդին նվիրեց 20 հազար հեկտար ցանքատարածություն ունեցող պետական տնտեսություն կազմակերպելու համար անհրաժեշտ տեխնիկա և սարքավորում։

Երախտագիտության զգացմունք արտահայտելով սովետական ժողովրդի նկատմամբ՝ բարեկամական այս մեծ օգնության համար, Մաո Ցզե-դունը գրել է. «Կասկածից վեր է, որ այս հացահատիկային պետական տնտեսությունը ոչ միայն կարևոր օրինակելի դեր կխաղա Չինաստանի գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման առաջընթացի գործում, այլև կօգնի Չինաստանին՝ պատրաստելու տեխնիկական կադրեր գյուղատնտեսության համար և ուսումնասիրելու Սովետական Միության արժեքավոր փորձը խամ և խոպան հողերի յուրացման գործում»։

Մեծ հաջողություններ են ձեռք բերված նաև Չինաստանի ազգային կուլտուրայի զարգացման գործում։ Գրականությունը, թատրոնը, ռադիոն, արվեստը, կրթությունն

այժմ ի սպաս են դրված աշխատավորական լայն մասսաներին։ 1953 թվականին Չինաստանի տարրական և միջնակարգ դպրոցներում սովորում էր ավելի քան 54 միլիոն մարդ։ Բարձրագույն ուսումնական հաստատությունների դռները լայն բացված են աշխատավոր երիտասարդության համար։

Կուլտուրայի զարգացման գործում ձեռք բերված հաջողությունների մեջ ևս երևան է գալիս սովետա-չինական բարեկամության բարերար ազդեցությունը։ Հինգ տարվա ընթացքում Սովետական Միությունում եղել են Չինաստանի տասնյակ դելեգացիաներ՝ գիտնականներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ժուռնալիստներ, դերասաններ, հազարավոր չինական բանվորներ և գյուղացիներ։ Լինելով ՍՍՌՄ-ում, նրանք սովետական փորձն օգտագործում են իրենց պրակտիկ աշխատանքում։

Սովետական մարդիկ իրենց հերթին բացառիկ մեծ հետաքրքրություն են ցուցաբերում չին մեծ ժողովրդի կուլտուրայի նկատմամբ։ Սովետական Միությունում մեծ հաջողությամբ ցուցադրվում են չինական կինո-նկարները։ Թատրոններում բեմադրվում են չինական հեղինակների պիեսները, մեծ տիրաժներով հրատարակվում են Չինաստանի գրողների գործերը։ Այս տարինե-



րի ընթացքում Չինաստանում եղել են սովետական շատ արտիստներ, գրողներ, գիտնականներ։ Չինաստանում ելույթ են ունեցել Ստանիսլավսկու և Նեմիրովիչ-Դանչենկոյի անվան երաժշտական թատրոնի դերասանները, ՍՍՌՄ ժողովրդական պարերի պետական անսամբլը՝ Իգոր Մոիսեևի ղեկավարությամբ։ Մոսկվայում և ՍՍՌՄ այլ քաղաքներում հաջողությամբ անցան Չինաստանի ազգային-ազատագրական բանակի երգի-պարի անսամբլի գաստրոլները։

Բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության պայմանագրի ստորագրումից հետո անցած 5 տարիների ընթացքում անչափ աճել է Չինաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայի միջազգային հեղինակությունը։

Սովետա-չինական Պայմանագիրն ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը հակադրում է ՍՍՌՄ-ի և Չինաստանի խաղաղության քաղաքականությունը։ ՍՍՌՄ-ը և Չինաստանը պատրաստակամություն են հայտնել անկեղծ համագործակցության ոգով մասնակցելու ամբողջ աշխարհում խաղաղության և անվտանգության ապահովման նպատակին ուղղված բոլոր միջազգային գործողություններին։

Սովետական Միության կողմից աջակց-

ված Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի խաղաղասիրական նախաձեռնության շնորհիվ Կորեայում ձեռք բերվեց զինադադար։ Սովետական Միության և դեմոկրատական լագերի մյուս երկրների հետ միասին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան կարևոր դեր խաղաց Հնդկաչինում խաղաղություն հաստատելու գործում։ Ժողովրդական Չինաստանի ներկայացուցիչը, որպես դիտորդ, մասնակցեց Եվրոպայում խաղաղության և անվտանգության ապահովման Եվրոպական երկրների Մոսկովյան խորհրդակցությանը։ Չինաստանը և Սովետական Միությունը ձգտում են ճապոնական հարցի արդարացի լուծմանը։

Սակայն Չինաստանի և Սովետական Միության խաղաղասիրական նախաձեռնությունը հանդիպում է ԱՄՆ-ի կառավարող շրջանների ագրեսիվ քաղաքականության դիմադրությանը։ ԱՄՆ-ի իմպերիալիստները խափանում են Չինաստանին գրավելու իր օրինական տեղը Միավորված Ազգերի Կազմակերպությունում։ Չինաստանի նկատմամբ նրանք անց են կացնում տնտեսական բլոկադա։ Օգտագործելով Չան Կայ-շիի դավաճանական կլիկը՝ ԱՄՆ-ի իմպերիալիստներն ապօրինաբար օկուպացրեցին Չինաստանի տերիտորիայի վաղեմի անբաժանելի



մասը հանդիսացող Տայվան կղզին։ ԱՄՆ-ի իմպերիալիստները ջանալով ահաբեկել չինական ժողովրդին՝ կանգ չեն առնում ուժի, այդ թվում նաև ատոմային զենքի գործադրման սպառնալիքի առաջ։

Չին ժողովուրդը լի է Տայվան կղզին ազատագրելու վճռականությամբ։ «Տայվանի ազատագրումը,— հայտարարել է Չժոու Էն-լայը,— Չինաստանի սուվերեն իրավունքն է ու ներքին գործը, և այստեղ անթույլատրելի է որևէ արտաքին միջամտություն»։ Չին մեծ ժողովրդի այս արդարացի պահանջը արժանանում է բոլոր խաղաղասեր ժողովուրդների աջակցությանը, քանի որ այն ելնում է Ասիայում և ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման շահերից։

Նշելով Բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության պայմանագրի հնգամյակը, չին և սովետական ժողովուրդներն այսուհետև ևս կզարգացնեն և կամրապնդեն անխախտ բարեկամությունը՝ երկու մեծ ժողովուրդների հետագա հաջողությունների այդ գրանիտե հիմքը և կանեն ամեն ինչ խաղաղության մեծ գործը պաշտպանելու ու պահպանելու համար։

# ԶՐՈՒՅՑ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆՊԱՐՏԻԱԿԱՆՆԵՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԼՈԿԻ ՄԱՍԻՆ

ՅՈՒ. ՂՈՒԿԱՍՅԱՆ

Շուտով տեղի են ունենալու Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և տեղական Սովետների ընտրությունները։ Ինչպես նախորդ, այնպես էլ այս ընտրությունների ժամանակ Կոմունիստական պարտիան հանդես է գալիս անպարտիական բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի հետ բլոկ կազմած, դաշինք կնքած։ Պարտիական կազմակերպությունները ագիտացիոն-բացատրական աշխատանք են ծավալել դեպուտատության թե՛ պարտիական և թե՛ անպարտիական թեկնածուների օգտին, որը նպաստում է պարտիականների և անպարտիականների ժողովրդական բլոկի ամրապնդմանը և ապահովում բոլոր ընտրողների ակտիվ մասնակցությունը ընտրություններին։

Կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկի ամրապնդման փայ-



լուն օրինակ է հանդիսանում նաև այն, որ դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունքը իրագործում են ինչպես հասարակական կազմակերպությունների և աշխատավորների ընկերությունների ռեսպուբլիկական օրգանները, այնպես էլ դրանց շրջանային օրգանները, հավասարապես նաև բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները՝ ձեռնարկություններում և հիմնարկություններում, զինծառայողների ժողովները՝ զորամասերում, գյուղացիների ընդհանուր ժողովները՝ կոլտնտեսություններում ու գյուղերում, սովխոզների բանվորների ու ծառայողների ժողովները՝ սովխոզներում։ Այդ բոլոր ժողովներին կոմունիստների և անպարտիականների բլոկը միշտ էլ հանդես է եկել միասնական։

Կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկը հանդիսանում է սովետական հայրենասիրության, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության և նրանց բարոյա-քաղաքական միասնության արտահայտությունը։ Խոսելով կոմունիստների և անպարտիականների բլոկի մասին ընկեր Ստալինը նշել է, որ սովետական հասարակարգը անպարտիականներին կոմունիստների հետ միավորում է որպես սովետական

մարդկանց մեկ ընդհանուր կոլեկտիվ: Ապ-
րելով ընդհանուր կոլեկտիվում, Նրանք
միասին են պայքարել մեր երկրի հզորու-
թյան ամրապնդման համար, միասին են
պատերազմել և արյուն թափել ռազմաճա-
կատում՝ հանուն մեր Հայրենիքի ազատու-
թյան ու վեհության, միասին են կռել ու
կոփել հաղթանակը մեր երկրի թշնամիների
դեմ... դրա համար էլ կոմունիստների և ան-
պարտիականների բլոկը բնական ու կեն-
սական գործ է:

Սովետական պետության ամբողջ պատ-
մությունը ցույց է տալիս, որ չկա մի այն-
պիսի ուժ, որը կարողանա թուլացնել Կո-
մունիստական պարտիայի և անպարտիա-
կան մասսաների միջև եղած սերտ և ամուր
կապը: Կոմունիստական պարտիան ժողո-
վրրդական պարտիա է: Բացի ժողովրդի շա-
հերից, նրան հավատարմորեն ծառայելուց,
նա ուրիշ շահեր չունի:

Կոմունիստական պարտիայի ղեկավա-
րությունը պարտիականների և անպարտիա-
կանների ժողովրդական բլոկի հաղթանակնե-
րի վճռական պայմանն է: Կոմունիստական
պարտիան աշխատավորների փորձված ա-
վանգարդն է սոցիալիստական հասարա-
կարգն ամրապնդելու և զարգացնելու գոր-



ծում: Նա Սովետական պետության ղեկա-
վար և ուղղություն տվող ուժն է: Պար-
տիան մի նպատակ ունի՝ ժողովրդի բարօ-
րությունը և նա իր արտաքին ու ներքին
քաղաքականությունն ի սպաս է դրել այդ
մեծ գործին:

Կոմունիստների և անպարտիականների
ժողովրդական բլոկի սերտ կապը ցուցաբեր-
վեց ժողովրդական տնտեսության պլանների
կատարման աշխատանքում՝ ինչպես նախա-
պատերազմյան տարիներին, այնպես էլ Հայ-
րենական Մեծ պատերազմի ու ետպատե-
րազմյան տարիներին: Կոմունիստական
պարտիան, գլխավորելով աշխատավորների
քաղաքական և աշխատանքային խանդա-
վառությունը, խոշոր հաջողությունների հա-
սավ մեր երկրի ինդուստրացման, գյուղա-
տնտեսության կոլեկտիվացման, երկրի էլեկ-
տրիֆիկացման, խամ ու խոպան հողերի
յուրացման և ժողովրդական տնտեսության
այլ ճյուղերի զարգացման գործում:

Ձեռք բերված հաջողություններն ուղեկցվում
են սովետական մարդկանց նյութական բարե-
կեցության և կուլտուրական մակարդակի է՛լ
ավելի բարձրացմամբ: Անընդհատ բարձրա-
նում է բանվորների և ծառայողների ռեալ
աշխատավարձը, ավելանում են կոլտնտե-

սականների եկամուտները։ Աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի մասին հոգ տանելը սովետական հասարակության զարգացման օրենքն է։

Կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկի հաղթանակի գլխավոր պայմաններից մեկը այդ ՍՍՌՄ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության սերտ դաշինքն է, որը աճել ու ամրապնդվել է կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը տապալելու և պրոլետարիատի դիկտատուրան նվաճելու շնորհիվ։ Մյուս հիմնական պայմանը հանդիսանում է ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ձգտում են մեր երկրում արդյունաբերության զարգացման նոր վերելքի և առաջին հերթին ծանր արդյունաբերության զարգացման։ Արդյունաբերության բոլոր ճյուղերում արմատավորվում են գիտության նվաճումները և առաջավորների փորձը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հետևողականորեն իրականացնում են մի շարք կարևոր միջոցառումներ մեր երկրի գյուղատնտեսության



բոլոր ճյուղերի հետագա զարգացումն ապահովելու համար։ Գյուղատնտեսության հետագա վերելքի համար պայքարը այժմ դարձել է համաժողովրդական գործ։

Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության հետ մեկտեղ պարտիայի և կառավարության որոշումների կատարմանը ակտիվ կերպով մասնակցում է սովետական ինտելիգենցիան՝ գիտության և տեխնիկայի, կուլտուրայի և արվեստի, ժողովրդական կրթության և առողջապահության աշխատողները։ Ժողովուրդը բարձր է գնահատում իր ինտելիգենցիայի ստեղծագործական աշխատանքը, որը նպաստում է մեր արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի պրոգրեսին։ Ժողովրդի և ինտելիգենցիայի փայլուն կապի օրինակ է հանդիսանում այն, որ բազմաթիվ նախընտրական ժողովներում դեպուտատության թեկնածուներ են առաջադրվել նաև անվանի գիտնականներ, գրողներ, դերասաններ, մանկավարժներ, բժիշկներ և այլն։

Առաջադրված դեպուտատության թեկնածուների շարքում պատվավոր տեղ են գրավում Սովետական Բանակի մարտիկները, որոնց նկատմամբ սովետական ժողովուրդը

տածում է անսահման սեր ու համակրանք։ Սովետական Բանակը արթուն կերպով պաշտպանում է մեր ժողովրդի խաղաղ ստեղծագործական աշխատանքը։

Նախընտրական կամպանիան շարունակվում է, այն ցույց է տալիս, թե որքան հարուստ ու հանճարեղ է մեր ժողովուրդը, թե ինչպիսի հիանալի մարդիկ են աճել ձեռնարկություններում, հիմնարկներում և կառույցներում, տրանսպորտի և գյուղատնտեսության մեջ, գիտության ու կուլտուրայի և այլ բնագավառներում։ Սովետական պետության ամրության երաշխիքներից մեկն էլ այն է, որ մեր ներկայացուցչական օրգանները ներկայացնում են ամբողջ սովետական ժողովրդին՝ ինչպես կոմունիստներին, այնպես էլ անպարտիականներին մի միասնական նպատակի համար՝ կոմունիստական հասարակություն կառուցելու համար։

Կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկը ընդարձակում և ուժեղացնում է պարտիայի կապը ժողովրդի հետ, որն էլ ավելի է ամրապնդում Սովետական պետության հզորությունը։

Մեր ժողովրդին հարազատ ու հասկանալի են այն նպատակներն ու խնդիրները,



որոնք առաջադրում է Կոմունիստական պարտիան։

Նախընտրական այս օրերին ընտրողները նորից ու նորից հավանություն են տալիս մեր պարտիայի և Սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությանը, որը լիովին ծառայում է ամբողջ սովետական ժողովրդի, ինչպես նաև աշխարհի պրոգրեսիվ ու խաղաղասեր ժողովուրդների շահերին։

Կոմունիստների և անպարտիականների սերտ կապը անխզելի է։ Ինչպես նախորդ, այնպես էլ այս ընտրություններին աշխատավոր մասսաները կհամախմբվեն հարազատ Կոմունիստական պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի շուրջը, ձայն տալով կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկի թեկնածուներին, դրանով իսկ նրանք ձայն կտան մեր Հայրենիքի հետագա բարգավաճման ու ամրապնդման օգտին։

---

# ԱԳԻՏՊՈՒՆԿՏԸ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՐԵՐԻՆ

Ռ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Ընտրական կամպանիայի այս եռուն օրերին աշխատավորների լայն շրջանում պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտկոլեկտիվները քաղաքական-բացատրական ծավալուն աշխատանք են կատարում։ Այդ գործում պարտիական կազմակերպություններին խոշոր օգնություն են ցույց տալիս ագիտպունկտերը, որոնք ինչպես անցյալ, այնպես էլ ներկա ընտրությունների ժամանակ, հաջողությամբ գործում են յուրաքանչյուր ընտրական տեղամասում։

Ընտրությունները հաջող անցկացնելու նպատակով Երևանի տրամվայ-տրոլեյբուսի վարչության պարտկազմակերպության կոմիտեն հատուկ ուշադրություն է դարձնում Ստալինյան ռայոնի № 28 ընտրական տեղամասին կից գործող ագիտպունկտի աշխատանքը բարելավելու վրա։



Ամենից առաջ ագիտպունկտին տրվել է դրավիչ և տոնական տեսք։ Ագիտպունկտի մուտքը զարդարված է լոզունգներով և պլակատներով։ Նրա զբաղեցրած սենյակների գրապահարաններն ու սեղանները հարուստ են ընտրողներին հետաքրքրող քաղաքական և գեղարվեստական հարուստ գրականությամբ։ Ագիտպունկտի շենքն ունի 300 տեղանոց հարմար դահլիճ։ Պարտիական կազմակերպությունը հոգ է տարել նաև ագիտպունկտում ցուցադրական ագիտացիա կազմակերպելու մասին։ Սենյակներում փակցըված են պլակատներ և կոչեր։ Հենց այստեղ էլ կախված է ագիտպունկտի աշխատանքի պլանը՝ ի տես բոլոր ընտրողների, որպեսզի նրանք իմանան իրենց հետաքրքրող մասսայական-քաղաքական միջոցառումների անցկացման ժամանակի մասին։

Ագիտպունկտին կից ստեղծված է 80 մարդուց բաղկացած ագիտատորների կոլեկտիվ։ Ագիտկոլեկտիվի ղեկավարն է գործին գիտակ ընկ. Գ. Արոյանը։ Ագիտկոլեկտիվի կազմի մեջ ընտրված են քաղաքականապես ավելի պատրաստված և փորձված ընկերներ։ Նրանց թվում են՝ պարտիականներ Թ. Մարտիրոսյանը, Մ. Գրիգորյանը, Գ. Ղազարյանը, Վ. Սիսեցկայան և շատ ուրիշներ։

Պարտիականներից բացի, որպես ագիտատորներ աշխատում են շատ կոմերիտական ու պրոֆմիութենական ակտիվիստներ։

Յուրաքանչյուր ագիտատոր սիստեմատիկ աշխատանք է տանում իրեն ամրացված 15—20 ընտրողների հետ։ Ագիտացիոն զրույցները սովորաբար անց են կացվում ընտրողների բնակարաններում, որը ավելի է նպաստում ագիտատորի և ընտրողի կենդանի կապի հաստատմանը։

Պարտիական կազմակերպությունն ագիտատորների համար անց է կացրել սեմինարներ և հրահանգչական խորհրդակցություն։ Զեկուցումներ են կարդացվել «Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությունը» և «Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների Կանոնադրությունը» թեմաներով։

Թելմանի անվան դպրոցի դիրեկտոր, կոնսուլտանտ ընկ. Ա. Ղազանչյանը վերջերս սեմինար պարապմունք անցկացրեց ագիտատորների հետ «Ինչպես կազմակերպել հետաքրքիր և նպատակասլաց ագիտացիոն զրույց» թեմայով։

Այժմ ագիտատորներն ընտրողների հետ զրույցներ են անցկացնում ընտրական օ-



րենքի, ՍՍՌՄ Կոնստիտուցիայի, պարտիականների և անպարտիականների բլոկի թեկնածուների մասին։ Ագիտպունկտում կա մշտական կոնսուլտանտ, որին ագիտատորները հաճախ դիմում են խորհուրդներ ստանալու համար։

Ագիտատորներն ապահովված են անհրաժեշտ գրականությամբ՝ թարմ ժուռնալներով ու թերթերով։ Յուրաքանչյուր զրույցից հետո ագիտատորներն իրենց մոտ նշումներ են անում, թե ինչ թեմայի շուրջ են անցկացրել զրույցը, որքան ընտրողներ են մասնակցել, ինչո՞վ են հետաքրքրվել նրանք, ի՞նչ խնդրանքներ, ցանկություններ կամ դիտողություններ են լսել ու դիմել համապատասխան կազմակերպություններին՝ լուծում ստանալու համար։ Այսպես. Բրյուսովի փողոցի բնակիչներն ագիտատորներ Մ. Գրդելյանի, Բ. Մարտիրոսյանի հետ ունեցած զրույցի ժամանակ գանգատվել են այն բանից, որ ռայսովետը պատշաճ ուշադրություն չի դարձնում ամառվա ամիսներին ջրի մատակարարման գործի բարելավմանը, որ փողոցը դանդաղ է բարեկարգվում, իսկ ագիտատոր Ն. Շաքարյանի կողմից սպասարկվող ընտրողները գանգատվել են ռայսովետի գործկոմի սանբաժնի վատ աշխատանքից։

Հսելով ընտրողների քննադատական դիտողությունները, ագիտատորներն այդ ամենի մասին տեղյակ են պահել համապատասխան կազմակերպություններին, պահանջելով անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել թերությունները լիկվիդացնելու համար։

Ընտրողներին ագիտատորները մանրամասնորեն բացատրում են կոմունիստական պարտիայի մշակած և ամբողջ սովետական ժողովրդի կողմից իրականացվող քաղաքականությունը, կոնկրետ փաստեր են բերում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության ու գյուղատնտեսության բնագավառում աշխատողների աշխատանքային առօրյայից, պատմում են մեր Հայրենիքի հզորության մասին, սովետական հասարակական և պետական կարգի մասին, մեր սովետական դեմոկրատիայի գերազանցության մասին բուրժուականի նկատմամբ և այլն։ Ագիտատորներ Բ. Մինասյանը, Տ. Ավագյանը, Ս. Ցաբլուկյանը հատկապես մեծ աշխատանք են տարել ու տանում առաջին անգամ քվեարկությանը մասնակցողների շրջանում։ Նախապատրաստված թեմաներից բացի, նրանք ընտրողների հետ ունեցել են հատուկ զրույցներ «Սովետական ընտրական սիստեմի մասին», «ՍՍՌՄ քա-



ղաքացիների իրավունքների և պարտականությունների մասին» և այլ թեմաներով։

Ընտրողների պահանջները լրիվին բավարարելու նպատակով ագիտպունկտը իր առօրյա աշխատանքում օգտագործում է ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի բազմաթիվ ձևեր ու մեթոդներ, անց է կացնում մասսայական մի շարք միջոցառումներ։ Այսպես, օրինակ, ագիտպունկտի նախաձեռնությամբ 1955 թվականի հունվարի 30-ին ընտրողների համար կազմակերպվեց պատվերով համերգ։ Ագիտպունկտը վերջերս անց է կացրել «Միջազգային դրության մասին» թեմայով զեկուցում, որից հետո ցուցադրվել է կինոնկար։

Ագիտպունկտը ժամանակին լույս է ընծայում պատի թերթ, որի աշխատանքներին մասնակցում են նաև ընտրողները։

Այժմ սկսվել է ընտրական կամպանիայի ամենապատասխանատու շրջանը՝ դեպուտատության թեկնածուների օգտին տարվող ագիտացիայի շրջանը։ Այս ժամանակամիջոցում ագիտատորները ուժեղացնելով ընտրողների մեջ տարվող քաղաքական-բացատրական աշխատանքը, ավելի հաճախ են լինում տեղամասերում, կազմակերպում են հետաքրքիր և բովանդակալից զրույցներ ու

վստահելի անձերի հետ միասին ընտրողների հետ դեպուտատության թեկնածուների հանդիպումներ, կատարում են ընտրողների ցուցակների ճշտում ու վերահաշվառում։

Ընտրությունների օրը, ընտրական տեղամաս կներկայանան բոլոր ընտրողները և քաղաքական բարձր գիտակցությամբ ձայն կտան պարտիականների ու անպարտիականների ժողովրդական բլոկի թեկնածուների օգտին։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԱՆԿՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

*1954 թվականին ԱՄՆ-ի էկոնոմիկան լուրջ անկում ապրեց։ Ռազմական մրցավազքը հանդիսանում է ինչպես ԱՄՆ-ի, Անգլիայի, այնպես և մյուս կապիտալիստական երկրների կառավարող շրջանների այն հիմնական միջոցը, որի օգնությամբ ճգնում են կանխել տնտեսական լուրջ ցնցումները։*

★ *ԱՄՆ-ում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը կրճատվել է 7 տոկոսով։ Վերջին մեկ ու կես տարվա ընթացքում արտադրության միջոցների արտադրության անկումը կազմում է 15 տոկոս։ Արտադրության կրճատումը տեղի է ունեցել արդյունաբերության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են՝ մետալուրգիան, ածխային արդյունաբերությունը, մեքենաշինությունը և այլն։*

★ *1954 թվականին մետաղների ձուլումը կրճատվել է 18 տոկոսով. Նախորդ տարվա համեմատությամբ պողպատի ձուլումը 25 միլիոն տոննայով պակասել է, ածխի հանույթը իջել է 17 տոկոսով, լեռնահանքային արդյունաբերության մեջ արտադրանքն*

ամբողջությամբ վերցրած իջել է 21 տոկոսով։ Մեկ տարում փակվել է ածխի մոտ հազար հանք։

★ Անցյալ տարվա երկրորդ կեսին ԱՄՆ-ի դոմենյան վառարանների մեկ երրորդ մասը չի գործել։ «Մետալ բուլետին»-ի տվյալներով 1954 թվականի օգոստոսին 209 դոմենյան վառարաններից գործել են միայն 129-ը։

1954 թվականի հոկտեմբերին, նախորդ տարվա համեմատությամբ, հաստոցաշինությունը կրճատվել է 40 տոկոսով։ 1954 թվականի առաջին կիսամյակին մետաղամշակման արդյունաբերության պահանջը նախորդ տարվա համեմատությամբ մեկ երրորդով պակասել է։

★ 1954 թվականի հունվարից մինչև սեպտեմբեր ամիսը ձուլվող սարքավորումների պատվերները կրճատվել են 2,5 անգամ։ 1953 թվականի ապրիլին չկատարված պատվերների գումարը եղել է 75 միլիարդ դոլար, 1954 թվականի հունվարին այն կազմել է 56 միլիարդ դոլար, իսկ օգոստոսին չկատարված պատվերների գումարը կազմել է 47 միլիարդ դոլար։

★ 1954 թվականին ԱՄՆ-ում նոր ձեռնարկությունների շինարարության և սարքավորումներ ձեռք բերելու համար 8 միլիարդ դոլար պակաս է ներդրվել, քան 1953 թվականին։

★ ԱՄՆ-ի 1954—1955 թվերի հաստատված բյուջեն ունի 4,7 միլիարդ դոլարի դեֆիցիտ։ Պաշտոնական



տվյալների համաձայն բյուջեի ծախսային մասի 75 տոկոսը գնալու է ռազմական մրցավազքի համար։

★ 1953—1954 թվականին Անգլիայի ռազմական բյուջեն կազմել է պետական բյուջեի ծախսային մասի երկու հինգերորդ մասը, Ֆրանսիայի ռազմական ծախսերը՝ 30 տոկոսը, Արևմտյան Գերմանիայում՝ 40 տոկոսը։ 1954—1955 թվականներին Անգլիայի ռազմական ծախսերը նախորդ տարվա համեմատությամբ գերազանցելու են 10 տոկոսով։

★ 1954 թվականի առաջին կիսամյակում Անգլիայի հաստոցաշինական արդյունաբերությունը կրճատվել է ավելի քան 20 տոկոսով, խիստ կերպով իջել են նավաշինության պատվերները։

★ Չնայած արդյունաբերության 15—20 տոկոսը զբաղված է ռազմական պատվերների կատարմամբ, այնուամենայնիվ Ֆրանսիայի արդյունաբերության արտադրական հնարավորությունների միայն 70 տոկոսն է օգտագործվում։ Ածխային արդյունաբերության մեջ, 1947 թվականին 338 հազար բանվորի փոխարեն, 1954 թվականին աշխատել են 238 հազար մարդ։ Այդ ժամանակամիջոցում փակվել է 75 հանք։

★ ԱՄՆ-ի էկոնոմիկայի ճգնաժամային վիճակի հետևանքով երկրում ավելի ուժեղ կերպով է տեղի ունենում աշխատավորների քայքայումն ու աղքատացումը, անընդհատ ավելանում է գործազրկությունը և ֆերմերական տնտեսությունների քայքայումը։

★ ԱՄՆ-ում 1954 թվականին, 1953 թվականի հա-

համեմատությամբ, գործազուրկների թիվը աճել է 3,5 անգամ։ Պրոֆմիությունների տվյալներով 1954 թվականի վերջին լրիվ գործազուրկների թիվը երկրում հասնում էր 12 միլիոն մարդու։ 1954 թվականին, միայն վերամշակող արդյունաբերությունից դուրս է շպրտվել 1 միլիոն 250 հազար բանվոր։

★ Բանվորների աշխատավարձի տարեկան ֆոնդը ԱՄՆ-ի վերամշակող արդյունաբերության մեջ կրճատվել է 5,5 միլիարդ դոլարով, այսինքն՝ 11 տոկոսով։

★ ԱՄՆ-ի արդյունաբերության ճգնաժամային վիճակը միահյուսվում է խորացող ագրարային ճգնաժամի հետ։ Ցորենի ցանքատարածությունները ԱՄՆ-ում կրճատվել են 30 տոկոսով, բամբակի ցանքը՝ 20 տոկոսով, ֆերմերների եկամուտները 1954 թվականին, 1947 թվականի համեմատությամբ, իջել են 4,3 միլիարդ դոլարով։ Ամերիկյան ֆերմերների պարտքերը մեկ երրորդով գերազանցում են իրենց տարեկան մաքուր եկամուտներին։

Հարյուր հազարավոր ֆերմերներ քայքայվելով՝ մեկնում են քաղաք, ավելացնելով գործազուրկների բանակը։

★ ԱՄՆ-ի արդյունաբերության և գյուղատնտեսության անկումը, գործազրկության աճը, աշխատավորների աղքատացումն ու սորկացումը տեղի է ունենում ժողովրդական տնտեսության միլիտարիզացիայի պայմաններում, երբ ազգային եկամտի մեծ մասը ծախս-



վում է ռազմական մրցավազքի և զինված ուժերի պահպանման համար։

★ Կորեայի վրա կատարած ինտերվենցիայի սկզբից մինչև 1954 թվականը, ռազմական նյութերի ձեռքբերման և ռազմական շինարարության համար ծախսվել է 155 միլիարդ դոլլար։ Միայն Էյզենհաուերի իշխանության գլուխ անցնելու տարիներին բյուջեի դեֆիցիտը կազմում է 20 միլիարդ դոլար, որը ծածկվում է աշխատավորների հաշվին, հարկերի միջոցով։

★ Ամերիկյան պրոգրեսիվ տնտեսագետների հաշվարկումներով բանվոր-ծառայողների ռեալ աշխատավարձը երկրում գնալով իջնում է, իսկ ապրուստի միջոցները թանկանում են։ 1947—1949 թվականների համեմատությամբ, 1954 թվականի հոկտեմբերին ապրուստի միջոցները 14,5 տոկոսով բարձրացել են։

★ Աշխատավորների դրության վատթարացումը մոնոպոլիստների շահույթների աճի աղբյուրն է։ 1954 թվականի առաջին կիսամյակին «Ջեներալ մոտորս կոմպանիայի» շահույթները նախորդ տարվա նույն ժամանակի համեմատությամբ ավելացել են 36 տոկոսով, «Ջեներալ էլեկտրիկ կոմպանիային»-ը՝ 29 տոկոսով, «Դուգլաս էյրկրաֆտ կոմպանիային»-ը՝ 90 տոկոսով և այլն։

★ 1954 թվականին անգլիական երեք հազար կոմպանիաների շահույթները նախորդ տարվա համեմատությամբ ավելացել են 8,7 տոկոսով։ Ավտոմոբիլային և ավիացիոն 85 կոմպանիաների շահույթները ավե-

*լացել են 26 տոկոսով, իսկ քիմիական 80 ֆիրմաների՝ 33 տոկոսով։*

★ *Ռազմական մրցավազքի հետևանքով Անգլիայում անընդհատ բարձրանում են աշխատավորներից գանձվող հարկերը։ 1954 թվականի առաջին կիսամյակում, 1950 թվականի համեմատությամբ, պարուստի միջոցները թանկացել են 24 տոկոսով։ Մանրածախ ապրանքների գները ամենաբարձր մակարդակի են հասել։ Յուրաքանչյուր շնչին ընկնող շատ կարևոր սննդամթերքներ զգալի չափով ավելի քիչ են, քան եղել է նախապատերազմյան տարիներին։ Մսի գինը 2 անգամ բարձրացել է։*

★ *Արևմտյան Գերմանիայի օկուպացիոն ծախսերը 1953—1954 թվերին կազմում էին 12,7 միլիարդ մարկ, այսինքն 8,8 միլիարդ մարկ ավելի, քան 1950 թվականին։ Արևմտյան Գերմանիայի յուրաքանչյուր շնչին հասնում է 260 մարկ օկուպացիոն ծախս։ Այդ նշանակում է, որ Արևմտյան Գերմանիայի ամեն մի բանվոր պետք է տարվա մեջ մեկ ու կես ամիս աշխատի օկուպանտների պահպանության համար։*

---

ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

---

## ՉԻՆԱՍՏԱՆԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԱՄՆ-Ի ԱԳՐԵՍԻՎ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Երևանի Գինու կոմբինատի ագիտատորներ Վ. Մալխասյանը և Ն. Ճաղարյանը դիմել են խմբագրությանը հետևյալ հարցով. «Չինաստանի նկատմամբ ԱՄՆ-ի ագրեսիվ գործողությունները»։ Տպագրում ենք պատասխան այդ հարցին։

*Վերջին ժամանակներս ուժեղացել են ամերիկյան իմպերիալիստների հանցավոր գործողությունները Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի նկատմամբ։ Իրենց ագրեսիվ գործողություններով Ամերիկայի Միացյալ Նահանգները ձգտում են նոր պատերազմ բորբոքել Հեռավոր Արևելքում։ Ամերիկյան ռազմա-ծովային և ռազմա-օդային ուժերի կենտրոնացումը Տայվան կղզու շրջանում, պարզ կերպով վկայում է, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները հանդուգն կերպով միջամտելով Չինաստանի ներքին գործերին, կոպտաբար խախտում*

են միջազգային իրավունքի տարրական
նորմաները և Միավորված Ազգերի Կազմա-
կերպության կանոնադրության հիմնական
սկզբունքները։

Ամերիկյան ժուռնալիստներ Վ. Ռ. Հերս-
տի, Կինգսբերի Սմիթի և Ֆ. Կոնիֆի հետ
ունեցած զրույցի ժամանակ ընկեր Ն. Ս.
Խրուշչևը ԱՄՆ-ի այժմյան գործողություն-
ները Տայվանի շրջանում բնութագրեց որ-
պես խայտառակության էջեր ամերիկյան
ժողովրդի համար։ Ընկեր Խրուշչևը հայտա-
րարեց, որ Չինական Ժողովրդական Ռես-
պուբլիկայի նկատմամբ ԱՄՆ-ի քաղաքա-
կանության մեջ ոչ իմաստություն կա, ոչ էլ
հեռատեսություն, ըստ երևույթին,— նշում է
Ն. Ս. Խրուշչևը,— այդ քաղաքականության
հեղինակները ղեկավարվում են ոչ թե ա-
ռողջ դատողությամբ, այլ չին ժողովրդի նը-
կատմամբ տածած ատելության զգացմուն-
քով։ Դա նույնն է, թե ուրիշի տունը մտնի
մի զինված մարդ և հայտարարի, որ եթե
տան տերերը փորձեն իրենց դուրս վռնդել,
ապա իրենց միջև փոխըմբռնում չի լինի,
այլ պատերազմի սպառնալիք կառաջանա։
Ինքնին հասկանալի է, որ Չինաստանը չի
ենթարկվի նման սպառնալիքների։ Չինաս-
տանը մեծ ու հպարտ տերություն է։ Չին



ժողովուրդը գլուխ չի խոնարհի ոչ ոքի առջև
և չի ենթարկվի հարստահարության։ Հայտ-
նի է, որ Տայվանը Չինաստանի տերիտո-.
րիայի անկապտելի մասն է. այդ կղզին դեռ
հնագույն ժամանակներից պատկանել է
Չինաստանին։ Տայվանին տիրապետելու
նկատմամբ Չինաստանի իրավունքները
հաստատված են Կահիրեի (1943 թ.) և
Պոտսդամի (1945 թ.) դեկլարացիաներով,
որոնց տակ ստորագրել են ԱՄՆ-ը և Անգ-
լիան։ Գոյություն ունի նաև Ճապոնիայի կա-
պիտուլյացման համաձայնագիրը (1945 թ ),
որը ստորագրել են ԱՄՆ-ը, Անգլիան և
ՍՍՌՄ-ը։ Միջազգային այդ կարևորագույն
փաստաթղթերի համաձայն Տայվանը հան-
դիսանում է չինական տերիտորիա և պետք
է պատկանի Չինաստանին։ Կարևոր է նաև
այն փաստը, որ 1945 թվականի հոկտեմ-
բերին, հակահիտլերյան կոալիցիայի բոլոր
երկրների համաձայնությամբ, Տայվանում
Չինաստանն ընդունեց կղզում գտնվող ճա-
պոնական զինված ուժերի կապիտուլյացիան։
Այս ամենը պարզ կերպով ցույց են տա-
լիս, որ Տայվան կղզին Չինաստանին է
պատկանում և՛ պատմականորեն և՛ քաղա-
քականորեն և՛ իրավաբանորեն։ Պարզ է, որ
ԱՄՆ-ի կողմից Տայվան կղզու, Պենխուլե-

դաս (Պեսկադորյան) կղզիների և Չինաստանի առափնյա մյուս կղզիների զավթումը կոպիտ և կանխամտածված պրովակացիա է։ Ընթացիկ տարվա հունվարի 29-ին, ամերիկյան ժուռնալիստներ Հերստի և Կինգսբերի Սմիթի հետ ունեցած զրույցի ժամանակ ՍՍՌՄ Արտաքին Գործերի մինիստր Վ. Մ. Մոլոտովը հայտարարեց. «Ստացվում է այսպես. առաջ այդ կղզին (խոսքը Տայվանի մասին է) զավթել էր Յապոնիան, իսկ հիմա ո՞վ՝ ԱՄՆ-ը։ Այսպիսով, սկզբում Չինաստանին իր ազգային տերիտորիայից զրկել էր մի երկիր, իսկ այժմ՝ մի ուրիշը»։

Ամերիկայի Միացյալ Նահանգները ոչ միայն միջամտում են Չինաստանի ներքին գործերին, խանգարելով Տայվանի ազատագրմանը, այլև կազմակերպում են ռազմական պրովակացիաներ ու հանցավոր դավադրություն չին ժողովրդի նկատմամբ։ Հունվարի 18-ին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան Իցզյանշան կղզին հաջողությամբ ազատագրելուց հետո, ամերիկյան իմպերիալիստները մի կողմից ուժեղացրին իրենց ռազմական գործողությունները, մյուս կողմից տենդորեն նախապատրաստում են նոր դավադրություն, որը ՄԱԿ-ի դրոշով պետք է քողարկի Չինաստանի դեմ ուղղված ԱՄՆ-ի ագրեսիվ գործողությունները։



Հասկանալի է, որ Տայվանի ազատագրումը Չինաստանի սուվերեն իրավունքն ու ներքին գործն է, և անթույլատրելի է որևէ արտաքին միջամտություն։ ՄԱԿ-ի կանոնադրության 2-րդ հոդվածի 7-րդ պարագրաֆը նույնպես պարզ կերպով նախատեսում է. «Սույն կանոնադրությունը Միավորված Ազգերի Կազմակերպությանը ոչ մի չափով իրավունք չի տալիս միջամտել այն գործերին, որոնք ըստ էության մտնում են ամեն մի պետության ներքին իրավասության մեջ, և Միավորված Ազգերի Կազմակերպության անդամներից չի պահանջում այդպիսի գործերը լուծման ներկայացնել սույն կանոնադրության կարգով»։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ներքին գործերին միջամտելու համար ՄԱԿ-ը ձգտում է օգտագործել այն փաստը, որ Անվտանգության Խորհրդում քննարկվում է ամերիկյան դիվանագիտության կողմից թելադրված «Տայվանի նեղուցում տիրող դրության» հարցի վերաբերյալ Նոր Զելանդիայի առաջարկը։ Պարզ է, որ ՄԱԿ-ի Անվտանգության Խորհուրդը, որպես խաղաղությունը պաշտպանող միջազգային օրգան, պետք է զբաղվի ոչ թե «Տայվանի նեղուցում տիրող դրության» հարցով, այլ

այդ շրջանում Ամերիկայի Միացյալ Նահանգների ագրեսիվ գործողությունների հարցի քննարկմամբ։ Ամերիկյան կառավարության կողմից իրականացվող ագրեսիվ քաղաքականությունը Չինաստանի նկատմամբ բացահայտվում է մի շարք փաստերով։ Վերջերս ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերը կոնգրեսին դիմեց հատուկ ուղերձով՝ պահանջելով, որ կոնգրեսը իրեն լիազորություններ տա՝ ԱՄՆ-ի զինված ուժերն օգտագործելու այն դեպքում, երբ անհրաժեշտ լինի ապահովել «Ֆորմոզայի և Պեսկադորյան կղզիների» այսպես կոչված «անվտանգությունը», այլ խոսքով՝ ապահովել Տայվանի ամերիկյան օկուպացիայի շարունակումը։ Այդ ուղերձի հիման վրա օրերս ԱՄՆ-ի կոնգրեսի կողմից հաստատված բանաձևը պրեզիդենտին թույլ է տալիս իր հայեցողությամբ զինված գործողություններ սկսել ընդդեմ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի։

Օգտագործելով Տայվանը և խաղաղ օվկիանոսյան մյուս ռազմական բազաները, ամերիկյան գաղութարարները ձգտում են ամեն գնով պահպանել իրենց խարխլված դիրքերը Հեռավոր Արևելքում։ Պատերազմի ամերիկյան հրձիգ Դուգլաս Մակարտուրի



հայտարարությամբ, Ասիայի բնական ռեսուրսները կենսական անհրաժեշտություն են ԱՄՆ-ի արդյունաբերության համար, իսկ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան այդ ռեսուրսների պահպանման № 1 սպառնալիքն է։ Մակարտուրի ցինիկ հետևությունն այն է, որ պետք է լիկվիդացնել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Իրադարձությունները պարզ կերպով ցույց են տալիս, որ Տայվանի շրջանում և Հեռավոր Արևելքում այժմյան լարվածությունը կարելի է բացատրել լոկ ԱՄՆ-ի ագրեսիվ գործողություններով Չինաստանի նկատմամբ։ Այդ լարվածությունը կվերացվի, եթե Միացյալ Նահանգները դադարեցնեն իրենց միջամտությունը Չինաստանի ներքին գործերին և իրենց բոլոր զինված ուժերը հանեն Տայվանից ու Տայվանի նեղուցից։ Չին ժողովուրդը չի կարող հանդուրժել իր կողմից մերժված Չան Կայ-շիի «կառավարության» գոյությունը Տայվանում, ժամանակն է, որ Չան Կայ-շին իր թափթփուկներով կորչի մի այլ տեղ և չփչացնի պետությունների հարաբերությունները։ Չինաստանի սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը պաշտպանելու, Չինաստանի անվտանգությունը և Հեռավոր Արևելքում խաղաղությունը պաշտ-

պանելու համար չին ժողովուրդը պետք է ա-
զատագրի Տայվանը, իսկ Ամերիկայի Միաց-
յալ Նահանգները պետք է դադարեցնեն մի-
ջամտությունն ու ագրեսիվ գործողություն-
ները Չինաստանի նկատմամբ։

Ենելով Հեռավոր Արևելքում և ամբողջ աշ-
խարհում խաղաղությունը պաշտպանելու
շահերից Սովետական կառավարությունը չի
կարող սառը կերպով անցնել Չինաստանի
նկատմամբ ամեն տեսակի հանցավոր գոր-
ծողությունների կողքով։ Ինչպես նշված է
ՍՍՌՄ Արտաքին Գործերի Մինիստրի հուն-
վարի 31-ի հայտարարության մեջ, Սովետա-
կան կառավարությունը անհանգստացած է
վտանգավոր այն դրությամբ, որն ստեղծվել է
Տայվանի և Չինաստանի ափերի մոտ ընկած
մյուս կղզիների շրջանում։ Ստեղծված դրու-
թյունը սպառնում է խաղաղության պահ-
պանմանը և ուժեղացնում է նոր պատերազ-
մի վտանգը։ ՄԱԿ-ի Անվտանգության խոր-
հրդի հունվարի 31-ի նիստում ՍՍՌՄ-ի
ներկայացուցիչը առաջարկ մտցրեց քննար-
կելու Տայվանի և Չինաստանի մյուս կղզի-
ների շրջանում Չինական ժողովրդական Ռես-
պուբլիկայի նկատմամբ ԱՄՆ-ի ագրեսիվ
գործողությունների հարցը։



Անվտանգության խորհրդի քննարկմանը
ներկայացված բանաձևի նախագծում հանձ-
նարարվում է, որպեսզի Անվտանգության
խորհուրդը դատապարտի ԱՄՆ-ի ագրեսիվ
գործողությունները Չինաստանի նկատմամբ։
Նախագծում պահանջվում է ԱՄՆ-ի կառա-
վարությունից, անհապաղ ետ կանչել ամե-
րիկյան բոլոր օդային, ծովային և ցամա-
քային ուժերը Տայվան կղզուց և Չինաստա-
նին պատկանող մյուս տերիտորիաներից։
Սովետական Միության այդ կարևորագույն
առաջարկները համապատասխանում են բո-
լոր խաղաղասեր ժողովուրդների իղձերին,
որոնք անհանգստացած են Տայվանի շրջա-
նում ստեղծված վտանգավոր դրության հա-
մար։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի 2-րդ սեսիայում
տված իր ընդարձակ զեկուցման մեջ Վ. Մ.
Մոլոտովը մի անգամ ևս ընդգծեց Սովետա-
կան Միության դիրքը Տայվանի հարցում։
«Մենք Տայվանի հարցը համարում ենք Չի-
նաստանի ներքին գործը,— նշում է ընկեր
Մոլոտովը,— իսկ ԱՄՆ-ի զավթողական գոր-
ծողությունները ու նրա պատերազմի սպառ-
նալիքները համարում ենք ագրեսիա, որը ան-
վերապահորեն պետք է դատապարտվի...»։

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

**ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱԺՈՐԻՏԱՐ ՍԻՍՏԵՄ**— *Մաժորիտար բառը ֆրանսերեն նշանակում է մեծամասնություն։ Բուրժուական երկրներում, հատկապես ԱՄՆ-ում, մեծ տարածում է գտել ընտրությունների մաժորիտար սիստեմը։ Շահագործող դասակարգերը օգտագործելով ընտրությունների հակաժողովրդական, ռեակցիոն մաժորիտար սիստեմը, արգելում են աշխատավորների ներկայացուցիչների մուտքը պառլամենտում կամ կառավարման որևէ օրգանում։*

*Կապիտալիստական երկրների պրոգրեսիվ ուժերը կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ պայքարում են ընտրությունների ռեակցիոն այդ սիստեմի դեմ և պահանջում են այն փոխարինել համեմատական պրոպորցիոնալ ընտրական սիստեմով։*

**ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ (ՊՐՈՊՈՐՑԻՈՆԱԼ) ՍԻՍՏԵՄ**— *Ըստ ընտրական այս սիստեմի դեպուտատական մանդատները բաժանվում են ընտրություններին մասնակցող քաղաքական պարտիաների միջև՝ ձայների համեմատական (պրոպորցիոնալ) քանակով, որը տրվում է տվյալ պարտիայի թեկնածուի օգտին՝ ընտրությունները սովորաբար տեղի են ունենում ըստ մեծ օկրուգների, որոնցից յուրաքանչյուրում ընտր-*



*վում են մի քանի դեպուտատներ և ընտրողներն այս կամ այն պարտիայի թեկնածուների օգտին քվեարկում են ցուցակներով։*

*Կապիտալիստական երկրներում բազմապարտիյան պայմաններում, ընտրությունների պրոպորցիոնալ սիստեմը, ընտրությունների մաժորիտար սիստեմի համեմատությամբ, ունի պրոգրեսիվ նշանակություն, որովհետև նա արտահայտում է երկրի դասակարգային ուժերի ռեալ փոխհարաբերությունը և հնարավորություն է տալիս փոքր պարտիաներին ունենալ իր ներկայացուցիչը ընտրական օրգաններում։ Շնորհիվ ընտրությունների համեմատական (պրոպորցիոնալ) սիստեմի, կոմունիստական և բանվորական պարտիաները անգամ այն երկրներում, որտեղ նրանք փոքրամասնություն են կազմում, կարողանում են օգտագործել պառլամենտական ամբիոնը աշխատավորների օգտին։*

*Կապիտալիստական մի շարք երկրների ռեակցիոն կառավարողները վաճառելով իրենց ազգային շահերը ամերիկյան իմպերիալիստներին, լիկվիդացրել են ընտրությունների համեմատական (պրոպորցիոնալ) սիստեմը։*

## ԻՆՉՊԻՍԻ ՄԵԴԱԼՆԵՐ ԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՈՒՄ

*1, «Ոսկե աստղ», սահմանվել է 1939 թվականին։ Նրանով պարգևատրվում են Սովետական Միության Հերոսները։*

2. «Մուրճ և մանգաղ» ոսկե մեդալ, սահմանվել է 1940 թվականին։ Նրանով պարգևատրվում են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսները։

3. «Խիզախության համար», սահմանվել է 1938 թվականին։

4. «Մարտական ծառայությունների համար», սահմանվել է 1938 թվականին։

5. «Ուշակովի մեդալ», սահմանվել է 1944 թվականին։

6. «Նախիմովի մեդալ», սահմանվել է 1944 թվականին։

7. «Բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակի 20 տարին», սահմանվել է 1938 թվականին։

8. «Սովետական Բանակի և Նավատորմի 30 տարին», սահմանվել է 1948 թվականին։

9. «Հայրենական պատերազմի պարտիզանին», սահմանվել է 1943 թվականին, մեդալն ունի 2 աստիճան։

10. «Օդեսայի պաշտպանության համար», սահմանվել է Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում։

11. «Սևաստոպոլի պաշտպանության համար», սահմանվել է Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում։

12. «Ստալինգրադի պաշտպանության համար», սահմանվել է Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում։



13. «Լենինգրադի պաշտպանության համար», սահմանվել է Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում։

14. «Մոսկվայի պաշտպանության համար», սահմանվել է Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում։

15. «Կովկասի պաշտպանության համար», սահմանվել է Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում։

16. «Սովետական բևեռը պաշտպանելու համար», սահմանվել է Հայրենական պատերազմի ժամանակ։

17. «Բելգրադը ազատագրելու համար», սահմանվել է 1945 թվականին։

18. «Վարշավան ազատագրելու համար», սահմանվել է 1945 թվականին։

19. «Պրագան ազատագրելու համար», սահմանվել է 1945 թվականին։

20. «Բուդապեշտը գրավելու համար», սահմանվել է 1945 թվականին։

21. «Քյոնիգսբերգը գրավելու համար», սահմանվել է 1945 թվականին։

22. «Վիեննան գրավելու համար», սահմանվել է 1945 թվականին։

23. «Բեռլինը գրավելու համար», սահմանվել է 1945 թվականին։

24. «1941—1945 թ.թ. Հայրենական Մեծ պատերազմում Գերմանիայի դեմ տարած հաղթանակի համար», սահմանվել է 1945 թվականին։

25. «Ճապոնիայի դեմ տարած հաղթանակի համար», սահմանվել է 1945 թվականին։

26. «1941—1945 թ.թ. Հայրենական Մեծ պատերազմում քաջարի աշխատանքի համար», սահմանվել է 1945 թվականին։

27. «Աշխատանքային արիության համար», սահմանվել է 1938 թվականին։

28. «Աշխատանքային գերազանցության համար», սահմանվել է 1938 թվականին։

29. «Մայրության մեդալ», սահմանվել է 1944 թվականին։ Մեդալն ունի 2 աստիճան։ Վեց երեխա ծնած և դաստիարակած մայրերն ստանում են առաջին աստիճանի մեդալ, իսկ 5 երեխա ծնած և դաստիարակած մայրերը՝ երկրորդ աստիճանի մեդալ։

30. «Դոնբասի քարածխային հանքերը վերականգնելու համար», սահմանվել է 1947 թվականին։

31. «Մոսկվայի 800-ամյակի հիշատակին», սահմանվել է 1947 թվականին։

32. «ՍՍՌՄ պետական սահմանների գերազանց պահպանության համար», սահմանվել է 1950 թվականին։

33. «Հասարակական կարգի պահպանության գերազանց ծառայության համար», սահմանվել է 1950 թվականին։

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Գ. Վ. ՎԵԴԵՆՅԱՊԻՆ, Ա. Մ. ԳՈՒՐԵՎԻՉ.— «ԴՏ—54» տրակտորի շահագործումը»: Գինը 4 ռ. 40 կ., էջ 300. տիրաժ 3000։

Գ. ՍԱՀԱԿՅԱՆ.— «Նյութական շահագրգռվածությունը սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման խթանն է»: Գինը 65 կ., 64 էջ, տիրաժ 5.000։

ԱՐԱՄ ԻՆՃԻԿՅԱՆ.— «Միքայել Նալբանդյան»: Գինը 2 ռ. 70 կ., 176 էջ, տիրաժ 10.000։

ԱՆՆԱ ԶԵԳԵՐՍ.— «Մեռածները երիտասարդ են մնում»: Գինը 14 ռ. 55 կ., 600 էջ, տիրաժ 5.000։

Վ. ՍՈՒԽՈԴՐԵՎ.— «Սովետական դատարանը պաշտպանում է կանանց, երեխաների, ընտանիքի իրավունքները»: Գինը 1 ռ. 15 կ., 90 էջ, տիրաժ 5.000։

Դ. ԿԱՐԵՎ.— «Սովետական դատարանի կազմակերպման ու գործունեության դեմոկրատական հիմունքները»: Գինը 95 կ., 76 էջ, տիրաժ 5.000։

ՄՈՒՐԱՑԱՆ.— «Նոյի ագռավը», «Առաքյալը»: Գինը 6 ռ. 25 կ., 192 էջ, տիրաժ 10.000։

Վ. ՕՐՐՈՒՉԵՎ.— «Կենտրոնական Ասիայի խորքերում»: Գինը 8 ռ. 75 կ., 236 էջ, տիրաժ 4.000։

Խմբագիր՝ Գ.Ր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 4 1955 г.

*ՎՖ 08831* *Պատվեր 175* *Տիրաժ 8200*

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.։*